Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 10 (17)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1937

digitised by A.R.A.R.@

Պրոլետարնե՛ր բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 10 (17)


ՀՍՍՀ-ССР

ՀԿ(բ)ԿԿ հրատարակչություն—ռեդ. «Կոմունիստ»
ՅԵՐԵՎԱՆ — 1937

digitised by A.R.A.R.@

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ
Պատ. քարտուղար՝ Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Սրբ.՝ Մ. Սուքյան և Մ. Գևորգյան
Հրատ. № 13, պատվեր № 29
Գլավլիտի լիազոր Շ—1250
Տիրաժ 9372

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատ. «Խորհրդ. Հայաստան»-ի տպարան, Յերևան

# ՏՐՈՑԿԻՍՏԱԿԱՆ ՊՐՈՎՈԿԱՏՈՐՆԵՐԻ ՅԵՎ ԲԱՆԴԻՏՆԵՐԻ ՄԻ ՔԱՆԻ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՅԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Ընկեր Ստալինը, ՀամԿ(բ)Կ-ի Կենտկոմի Պլենումում «Կուսակցական աշխատանքի թերությունների և տրոցկիստական ու այլ յերկերեսանիներին լիկվիդացիայի յենթարկելու միջոցառումների մասին» իր տված զեկուցման մեջ ասել է, վոր անհրաժեշտ է ջախջախել և դեն շպրտել այն նեխված թեորիան, թե «տրոցկիստական վնասարարները իբր թե այլևս ռեզերվ չունեն, թե նրանք իբր թե իրենց վերջին կադրերն են հավաքում»: Ընկեր Ստալինը մատնանշեց, վոր հակառակ այդ սխալ թեորիայի, տրոցկիստական վնասարարները ռեզերվներ ունեն վոչ միայն վորպես ջախջախված,

digitised by A.R.A.R.@

չահագործող դասակարգերի մնացորդներ ԽՍՀՄ-ում, այլև վորպես «ԽՍՀՄ-ի սահմաններից դուրս գտնվող մի շարք խմբեր ու կազմակերպություններ, վորոնք թշնամի յեն Խորհրդային Միությանը»: Իբրև օրինակ, ընկեր Ստալինը մատնանշեց «Տրոցկիստական հակահեղափոխական չորրորդ ինտերնացիոնալը, վորը յերկու յերրորդով բաղկացած է լրտեսներից և դիվերսանտներից», ինչպես և մի շարք հակահեղափոխական խմբակներ, վորոնց գլխավորում են զանազան ռենեգատներ և արկածներ:

Այն նեխված թեորիան, վորի մասին խոսել եր ընկեր Ստալինը, դեռ տարածված և նաև կապիտալիստական յերկրների կոմունիստական կուսակցությունների շարքերում: Այդ նեխված թեորիայի հիման վրա, թերագնահատվում է այն վնասը, վորը հասցնում են զանազան յերկրներում գոյություն ունեցող հակահեղափոխական, տրոցկիստական խմբակներն ու կազմակերպությունները այդ յերկրների բանվորների ու հակաֆաշիստական շարժմանը: Մասնավորապես թերագնահատվում է այն փաստը, վոր այդ պրովոկատորական, տրո-



ցկիստական խմբակների միջից, վորոնք միացած են իրենց կատաղի ատելությամբ դեպի ԽՍՀՄ-ն, վորոնք կապված են ֆաշիստական պահնորդական բաժինների հետ, ընտրվում են այն գործակալները, վորոնք ուղարկվում են Խորհրդային Միության տերիտորիան՝ լրտեսական, վնասարար, տեռորիստական աշխատանք կատարելու համար: Բավականաչափ հաշվի չի առնվում այն, վոր տրոցկիստական բանդիտների վերջին յերկու դատավարությունների ժամանակ մերկացված տեռորիստների և լրտեսների մեջ կային մի շարք մարդիկ, վորոնք հավաքագրվել եյին արտասահմանում այդ տրոցկիստական խմբակների մեջ, վորոնք Գեստապոյի օգնությամբ, հանդերձվել եյին կեղծ անցագրերով և ապա անց եյին կացվել խորհրդային տերիտորիան: Վոչ մի հիմք չկա յենթադրելու, թե այդ հավաքագրումը և այդ «գործուղումները» դադարել են: Ընդհակառակը:

Անհրաժեշտ է ավելի մոտիկից դիտել այդ բանդիտային խմբակներին ու պրովոկատորներին, վորոնք մեծ մասամբ բաղկացած են լրտեսներից և պրովոկատորներից, փոքրամասնությամբ՝ իրենց խաբած



digitised by A.R.A.R.@

մարդկանցից: Բնորոշ է, որ մի շարք յերկրներում գոյություն ունեն իրար հետ մրցող զուգահեռ խմբակներ և կազմակերպություններ: Վոմանք բացեիբաց իրենց տրոցկիստ են հայտարարում, մյուսները ժխտում են իրենց տրոցկիզմը, վոմանք էլ փորձում են, զանազան վարագույրների տակ թաքնված, բուն դնել մյուս կազմակերպությունների մեջ, վորպես ֆրակցիաներ: Մի շարք յերկրներում (Ֆրանսիայում, Անգլիայում, ԱՄՆ-ում, Լեհաստանում, հրեական Բունդ-ում) տրոցկիստները սոցիալիստական կուսակցությունների մեջ են մտնում կամ ռեակցիոն առաջնորդների հովանավորությամբ, վորոնք ոգտագործում են նրանց՝ կոմունիստների հետ միասնական ճակատ հաստատելու դեմ պայքարելու համար, կամ խցկվելով այդ կուսակցությունների ձախ թևի մեջ, պրովոկատորական կեղծ-հեղափոխական ֆրազների վարագույրի տակ:

Տրոցկիստական խմբակները բացեիբաց միացել են այսպես կոչված «Չորրորդ ինտերնացիոնալում»: «Չորրորդ ինտերնացիոնալ» ստեղծելու խոսակցությունները մի քանի տարի տևեցին: Տրոցկիստների փոր-



ձերը՝ ներգրավել այդ գործին մի շարք խմբակներ, ինչպես շվեդական «անկախ կոմունիստներին», անգլիական անկախներին, իտալական «մաքսիմալիստներին», ֆրանսիական «պյուպլիստներին», ձախ եսերների բեկորներին և այլն,— անհաջող անցան: Վերջապես, 1936 թվականի ամառը տեղի ունեցավ «4-րդ ինտերնացիոնալի հիմնադիր կոնֆերանսը», վոր հրավիրել եր պաշտոնապես տրոցկիստական կենտրոնը: Հրապարակված հաշվետվության համաձայն, կոնֆերանսը տեղի յե ունեցել «գաղտնի»: Ներկա յե յեղել 15 «պատվիրակ» 7 յերկրից և վորոշ թվով «դիտողներ»: Ներկայացված եյին՝ Ֆրանսիայից— «ինտերնացիոնալիստական բանվորական կուսակցությունը» և նրան հարող «հեղափոխական սոցիալիստական յերիտասարդությունը», Բելգիայից— «սոցիալիստական- հեղափոխական գործողությունը» և «ինտերնացիոնալ- կոմունիստների (տրոցկիստների) լիգան», Հոլանդիայից— «հեղափոխական - սոցիալիստական բանվորական կուսակցությունը», Անգլիայից— 2 «պատվիրակ» մի չհիշատակված կազմակերպությունից և 2 «դիտող», Շվեցարիայից — «մարքսիստական գործողու-



digitised by A.R.A.R.@

թյունը» Ցյուրիխում, Գերմանիայից — «ինտերնացիոնալ կոմունիստները», Իտալիայից — մի «պատվիրակ»՝ չհիշատակված կազմակերպությունից: Բացի դրանից, հաշվետվությունը հիշատակում է մի շարք յերկրներ (Ավստրիայից, Չեխոսլովակիայից, Հունաստանից, Լեհաստանից մինչև Պորտո-Ռիկո, Հնդկաչին և Հարավային Աֆրիկա), վորոնցից «պատվիրակներ» չեն կարողացել գալ՝ «կոնսպիրացիայի» պատճառով: Կոնֆերանսն ընդունել է «թեզեր, բանաձևեր ու կոչեր» և ընտրել է «ղեկավար օրգաններ»: Կոնֆերանսին վերաբերյալ ամբողջ հաշվետվությունից մի կիլոմետր տարածության վրա վոստիկանական պրովոկացիայի հոտ է փչում: Նրանում վոչ մի ազգանուն չկա, թեպետ այդ «Չորրորդ ինտերնացիոնալի» մեջ մտնող խմբակները, կազմակերպությունները յերկրների մեծ մասում գործում են բացահայտորեն: Այդ ամբողջ «4-րդ ինտերնացիոնալի» և նրա «գլխավոր խորհրդի» անանունությունը շեշտում է այն փաստը, վոր այդ ամբողջ ընկերության մեջ չկա ազնիվ, անբիծ անունով մի մարդ, վորով նա կարողանար վարագուրել մասսաների առջև իր կեղտոտ գործերը: Բացի դրանից,



մեծադղորդ անուններով հանդես յեկող այդ բոլոր «կազմակերպությունները» սոսկ խղճուկ խմբակներ են ներկայացնում:

Կոնֆերանսի ընդունած «թեզերը», «ձախ» ֆրազների քողի տակ, տալիս են պրովոկատորական աշխատանքի մի ամբողջ սիստեմ, վոր կատարվում է Ֆրանսիայի ու Բելգիայի գործադուլային շարժման նկատմամբ, Իսպանիայում դեմոկրատիայի համար մղվող պայքարի նկատմամբ: Այդ «թեզերը» ցինիկաբար հայտարարում են, թե ներկայումս ԽՍՀՄ-ն մեծ խոչընդոտ է հանդիսանում դեպի համաշխարհային հեղափոխություն տանող ճանապարհին: «4-րդ ինտերնացիոնալը» ԽՍՀՄ-ին վերաբերող հատուկ բանաձևում կոչ է անում բռնությամբ վերացնել խորհրդային իշխանությունը: Նույն բանաձևում հայտարարված է Խորհրդային Միության մեջ կապիտալիզմը վերականգնելու ծրագիրը, վորովհետև դա իբրև թե միակ միջոցն է յերկրի համար խաղաղություն ապահովելու «բոլոր բանակների» իմպերիալիստների հետ, այսինքն պատերազմի հրձիգ գերմանական ֆաշիզմի հետ:

Կոնֆերանսի բոլոր փաստաթղթերով կարմիր թելով անցնում է մի բան՝ կենաց և մահու կռիվ ժողովրդական ճակատի



digitised by A.R.A.R.@

դեմ, բանվորական միասնական ճակատի դեմ, պայքար բոլոր միջոցներով՝ ԽՍՀՄ-ում խորհրդային իշխանությունը տապալելու համար և կոչ է արված դիմել ամենուրեք, պրովոկատորական, բռնի գործողությունների:

Այդ բոլոր խմբակներն ու կազմակերպությունները, որոնք բանվորներին խաբելու նպատակով, հանդես են գալիս մեծադղորդ անուններով, ղեկավարվում են ամեն տեսակ պահնորդական բաժինների և հետախուզությունների մոտ ծառայության մտած իսկական լրտեսների և պրովոկատորների կողմից: Այդ խմբակների «օրգաններն» են հանդիսանում փոքր թերթուկներ, որոնք լույս են տեսնում անկանոն կերպով, նայած կեղտոտ աղբյուրներից ստացվող միջոցների: Այդ թերթուկներում, ոստիկանության մեջ թխված նյութերի կողքին, տպվում են նաև ավազակ բանդիտ Տրոցկու ստորագրած «ղեկավար» հոդվածները: Այդ բոլոր կազմակերպությունների ու խմբակները, ըստ իրենց կազմի, սակավամարդ են: Սակայն այն չարիքը, որը պատճառում են նրանք իրենց քայքայիչ և պրովոկատորային աշխատանքով, մանավանդ



մասսայական պայքարի սուր մոմենտներին, գերազանցում է նրանց թիվը:

Զանազան յերկրներում աշխատող և իր աշխատանքում ամենուրեք ֆաշիզմին ու պահնորդական բաժնին հարող այդ հանցավոր բանդայի հերոսների գործերը շատ քիչ են հայտնի:

Լեհաստանում «դեֆենսիվա»-ն վաղուց է փորձում քարշել տրոցկիզմը ձերբակալված հակաֆաշիստների մեջ, նրանց ազատություն խոստանալով տրոցկիստական խմբակները մտնելու պարտավորության համար: Հունաստանում տրոցկիստները բացեիբաց աշխատում են որպես պահնորդական բաժնի կողմից վարձատրվող պրովոկատորներ և մարդասպաններ: Ռումինիայում տրոցկիստները կազմում են «սիգուրանցա»-ի (պահնորդական բաժնի) հատուկ ջոկատը: Հարավսլավիայում տրոցկիստների գլուխն է կանգնած ոմն Ցիլիգան՝ իտալական լրտես և միաժամանակ հարավսլավյան պահնորդական բաժնի գործակալը:

Տրոցկիստական «4-րդ ինտերնացիոնալի» «գծով» աշխատող հանցավոր տիպերի պատկերաշարում հատուկ տեղ են գրավում հին ռենեգատ պրովոկատորները Գերմա-

digitised by A.R.A.R.@

նիայից։ Գերմանիայի «ինտերնացիոնալ կոմունիստների» խմբակի գլուխն են կանգնած զինովյեվականներ Ռուտ Ֆիշերը և Մասլովը։ Խմբակը Փարիզում հրատարակում է մի յերկշաբաթյա թերթուկ «Ունզեր վորտ» («Մեր խոսքը») անունով։ Ռուտ Ֆիշերը, վորը ֆրանսիական հպատակություն է ստացել, միաժամանակ հանդիսանում է Հիտլերի ուղղակի գործակալ, ֆաշիստ Դորիոյի մերձավորագույն աշխատակիցը և գերմանական տրոցկիստական խմբակի պարագլուխը։ Ադոլֆ Մասլովը, մի մութ տիպ, վորը վաղուց ի վեր կապված է գերմանական գաղտնի վոստիկանության հետ, ընդարձակել է մյուս յերկրների հետախուզությունների հետ իր ունեցած կապերը։ Նրանք յերկուսն էլ մարդիկ են ուղարկում Գերմանիա՝ «ընդհատակյա» աշխատանքի համար, տապալելով այն կազմակերպությունները, վորոնց հետ հաջողվում է նրանց եմիսարներին կապ հաստատել։ Գերմանական հին տրոցկիստ Հուգո Ուրբանսը, վորը ժամանակին գժտվել եր ավելի «ուղղափառ» գերմանական տրոցկիստ Գրիլևիչի հետ (վերջինս այժմ «աշխատում է» Պրագայում) այն պատճառով,



վոր նա՝ Ուրբանսը, բացեիբաց դուրս եր ավել Տրոցկու վնասարար և դիվերսիոն պլանները ԽՍՀՄ-ի նկատմամբ, այժմ հաշտվել է Տրոցկու հետ և աշխատում է նրա համար Ստոկհոլմում, ապաստան գտնելով շվեդական տրոցկիստ Ֆլիգի խմբագրած «Ֆոլկետս տագելբլյադետ» թերթում։

Տրոցկին Նորվեգիայում գտնվելիս նրան գործնականորեն ոգնող, ամենաակտիվ տրոցկիստ դարձավ Բրանդլերի և Բուխարինի կողմնակից, աջ ռենեգատ Ոլաֆ Շեֆլոն։

Սրիկա Շեֆլոն, վորը տաքուկ տեղ է ձեռք բերել վորպես Նորվեգիայի վոգելից խմիչքների մենաշնորհ Վարչության անդամ, տրոցկիստ Կոնրադ Կնուդսենի հետ միասին, հանդիսանում եր Տրոցկու հավատարմատար անձը և աջ ձեռքն եր նրա գաղտնի հակահեղափոխական աշխատանքում, յերբ Տրոցկին Նորվեգիայում գտնվող իր «ապաստարանից», Գեստապոյի հետ միասին, կազմակերպում եր լրտեսների, վնասարարների և մարդասպանների ուղարկումը Խորհրդային Միություն։ Շեֆլոն, տրոցկիստ Հաակոն Մայերի հետ միասին, փորձում է տրոցկիստական ֆրակցիա ստեղ-



digitised by A.R.A.R.@

ծել Նորվեգիայի բանվորական կուսակցության մեջ: Տեղեկանալով, վոր նրա անունն ևս տրվել է Տրոցկու ամենաչարամխտ գործակալների թվում, Շեֆլոն այդ մեղադրանքին «պատասխանեց» մի առաջնորդողով իր խմբագրած «Սյուրլանդետ» թերթում: Սակայն ԽՍՀՄ-ի դեմ հայհոյանքներով լի այդ յերկար հոդվածում նա վոչ մի խոսք չասաց տրոցկիզմին իր ցուցաբերած վերաբերմունքի ու իրեն՝ Տրոցկու հետ իր ունեցած սերտ կապի մասին և դրանով իսկ լիովին հաստատեց մեղադրանքը:

Ֆրանսիական աջ սոցիալիստ և տրոցկիստ Սուվարինը,— վորը սուտ խոսքերի վրա հենված հերքում հրապարակեց այն ժամանակ, յերբ ոգոստոսի դատավարության պահին մեղադրյալներն իրենք հաստատեցին նրա կապը տրոցկիստական-զինովյեվական տեռորիստական բանդայի հետ,— առանց պաշտոնապես Ֆրանսիայի տրոցկիստական «կուսակցության» մեջ մտնելու, մինչև այժմ էլ հանդիսանում է— ինչպես և հին տրոցկիստներ Ռոսմերը և Մոննատը— նրա գաղափարախոս առաջնորդը, խմբավորելով իր շուրջը ամենասանձարձակ արկածախնդիրներին և ԽՍՀՄ-ի թշնամիներին:



Տրոցկու ամենաակտիվ գործակալի դերն է խաղում դեռ 1924 թվականին նրա հավաքագրած ամերիկյան ժուռնալիստ Մաքս Իստմենը: 1925 թվականին Տրոցկին յերկերեսաբար հրաժարվեց Իստմենից, վորը հրապարակել եր Լենինի դեմ հենց Տրոցկու կողմից թելադրված մի սուտ, զրպարտիչ գրքույկ: Բայց Տրոցկին դեռ արտասահման հասած-չհասած, Իստմենը, դառնալով Տրոցկու գլխավոր գործակալը Ամերիկայում, ձեռնտու կապեր ստեղծեց նրա և ամերիկյան կապիտալիստական մամուլի միջև, մասնավորապես տխրահռչակ Հերստի կոնցերնի միջև: Վերջին ժամանակներս, գլխավորելով «Տրոցկու պաշտպանության կոմիտեն ԱՄՆ-ում», և Նյու-Յորքում տեղի ունեցած մի միտինգում բացեիբաց կոչ անելով՝ բռնի կերպով տապալել խորհրդային իշխանությունը, Իստմենը հանդիսանում է Ամերիկայում, գլխավորապես գրական լյումպեն պրոլետարների միջից, տրոցկիստական ռեզերվներ հավաքող:

Քանի ավելի յե սրվում պայքարը բոլոր յերկրներում՝ ռեակցիայի, ֆաշիզմի ու պատերազմի հրձիգների մութ ուժերի և դեմոկրատիայի, առաջադիմության ու խա-

digitised by A.R.A.R.@

ղղության ուժերի միջև, լրտեսությունը, պրովոկացիան, տեռորիստական դավադրությունները ավելի ու ավելի դառնալու են ժողովրդի թշնամիների զենքը: Տրոցկիստական խմբակներն ու կազմակերպությունները հանդիսանում են այն միջավայրը, վորտեղից ֆաշիզմն ավելի ու ավելի մեծ չափով ռեզերվներ է հավաքագրելու իր հանցավոր աշխատանքի համար:

Տրոցկիստական պրովոկատորների կողմից սպառնացող վտանգի դեմ պայքարելու համար, անհրաժեշտ է կոմինտերնի բոլոր սեկցիաներում ջախջախել և դեն գցել այն նեխված թեորիան, թե տրոցկիստական բանդիտները, իրենց սակավաթվության և անպետքության պատճառով, իբրև թե չեն կարող լուրջ վնաս հասցնել մասսայական պայքարին: Պետք է հիշել, վոր տրոցկիզմը քաղաքական հոսանք չէ վոչ բանվոր դասակարգում, վոչ էլ ժողովրդական մասսաներում, այլ մի ժահրոտ խոց է, վորն անհրաժեշտ է յերևան բերել նրա բոլոր յենթատեսակներով ու ճյուղավորումներով և արմատից վոչնչացնել:

Թարգմանված է «Կոմունիստական Ինտերնացիոնալ» ժուրնալի 3-րդ համարից — 1937 թ. մարտ:



# ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԸՆԹԵՐՑՈՂԻՆ

## ԿԱՏԱԼՈՆԻԱ

Կատալոնցիները Իսպանիայի խոշորագույն ժողովուրդներից մեկն են: Իսպանիայի 25 միլիոն բնակիչներից կատալոնցիները կազմում են մոտ 4,5 միլիոն հոգի: Նրանցից բուն Կատալոնիայում ապրում է մոտ 2,5 միլիոն: Նրանք ապրում են նմանապես Բալեարյան կղզիներում, Վալենսիայի և Արագոնիայի մի մասում: Բացի դրանից, ավելի քան 200 հազար կատալոնցի կա հարավային Ֆրանսիայում:

Մի ժամանակ անկախ Կատալոնիան 15-րդ դարում յենթարկվեց Կաստիլիայի թագավորներին (իսպանական): Յերկար դարերի ընթացքում կատալոնցիները պայքար են մղել իրենց անկախության համար: 17—18-րդ դարերում նրանց հաջողվել է մի



digitised by A.R.A.R.@

քանի անգամ բաժանվել Իսպանիայից: Սակայն Իսպանիան կրկին հպատակեցրել է նրանց, ավելի ու ավելի սահմանափակելով նրանց ավտոնոմ իրավունքները, վորոնք վերջնականապես վերացվեցին 19-րդ դարում:

Բուն իսպանական Կատալոնիայի տերիտորիան (Բարսելոնի, Խերոնի, Լերիդի և Տարագոնի նահանգները) բռնում են 32,194 քառ. կիլոմետր տարածություն:

Կատալոնիան Իսպանիայի այն մասն է, վորտեղ ամենից ավելի յե զարգացած արդյունաբերությունը: Այստեղ կենտրոնացած է իսպանական պրոլետարիատի ավելի քան մեկ յերրորդ մասը, տեքստիլ արդյունաբերության մոտ 90 տոկոսը և ելեկտրոտեխնիկ արդյունաբերության զգալի մասը: Այստեղ կան քիմիական և ռազմական գործարաններ, ավիո-գործարան և այլն: Հակառակ Իսպանիայի մնացած մասին, Կատալոնիայում քաղաքի բնակիչների թիվը գյուղականից ավելի յե:

Միևնույն ժամանակ Կատալոնիան զարգացած գյուղատնտեսության, մանավանդ այգեգործության մարզ է: Գլխավոր մշակույթներն են՝ խաղող, ձիթապտուղ, ըն-



կույզ, ցորեն, խցանածառ: Չնայած յերկրի արդյունաբերական զարգացման բարձր մակարդակին, Կատալոնիայի գյուղատնտեսության մեջ մինչև վերջին ժամանակներս պահպանվել են կիսաֆեոդալական շահագործման ձևերը, մանավանդ հողավարձակալության և կիսարարության ասպարեզում: Գերակշռում են մանր և միջակ գյուղացիական տնտեսությունները: Սակայն գյուղացիների մշակած հողի մեծ մասը նրանք վարձակալում են կալվածատերերից ճորտային պայմաններով:

Իսպանիայում տիրապետող կաստիլյան կալվածատիրական ազնվականության ագրարային քաղաքականությունն արգելակում էր Կատալոնիայի արտադրողական ուժերի զարգացումը: Կատալոնիայից առատ տուրք էր վերցվում՝ Իսպանիայի պետական հարկային հասույթների ավելի քան 30 տոկոսն ընկնում էր Կատալոնիային: Դրան ավելանում էր ազգային ուժեղ ճնշումը (ավտոնոմիայի իսպառ վերացումը, հիմնարկներում, դպրոցում և այլն ազգային լեզվի գործածման արգելումը և այլն): Վերջին հանգամանքն առանձնապես նպաստեց ազգային շարժման աճմանը:

digitised by A.R.A.R.@

Դեռ 1900 թվականին Կատալոնիայի խոշոր բուրժուազիան կազմեց այսպես կոչված մարզայինների Լիգա՝ խոշորագույն արդյունաբերող Կամբոյի գլխավորությամբ, և իր առաջ նպատակ դրեց սահմանափակ ավտոնոմիա Կատալոնիայի համար: Սակայն իսպանական շուկայով շահագրգռված կատալոնյան խոշոր բուրժուազիան համաձայնության էր գնում Մադրիդի հետ և ավելի ու ավելի յեր հեռանում ազգային շարժումից: Իսկ Կատալոնիայի խոշոր կալվածատերերը միշտ բլոկ են կազմել իսպանական ռեակցիայի հետ:

Կատալոնիայում ազգային շարժումը ամենաուժգին թափ ու ծավալ ստացավ Պրիմո դե Ռիվերայի դիկտատուրան տապալվելուց հետո (1930 թ.): 1931 թվականի հանրապետական հեղափոխությունից քիչ առաջ, մի շարք մանր նացիոնալիստական կուսակցություններ կազմեցին Կատալոնիայի ձախ հանրապետական կուսակցությունը, այսպես կոչված Եսկերրան՝ գնդապետ Մասիայի գլխավորությամբ (Մասիայի մահից հետո Եսկերրայի գլուխն անցավ Կատալոնիայի ներկա ղեկավար Կոմպանիսը): Եսկերրան ներկայացնում է մանր, միջին



և մասամբ խոշոր բուրժուազիայի ու ինտելիգենցիայի կուսակցությունների և կազմակերպությունների ֆեդերացիան: Եսկերրան մեծ ազդեցություն ուներ նաև Կատալոնիայի գյուղացիության վրա՝ նա ստեղծեց կատալոնյան վարձակալ գյուղացիների խոշորագույն կազմակերպությունը, այսպես կոչված ռաբասայրների Միությունը:

Պրոլետարիատի մեջ գերակշռում էր անարխիստների և անարխո – սինդիկալիստների ազդեցությունը: Անարխիստները՝ Բակունինի ուսմունքի հետևորդները, միացած են վորպես Իբերիայի անարխիստների ֆեդերացիա (ՖԱՅ): 1911 թվականին անարխո – սինդիկալիստները հիմնեցին աշխատանքի ազգային կոնֆեդերացիա, վորը մինչև այժմ էլ հանդիսանում է Կատալոնիայի պրոլետարիատի խոշորագույն պրոֆմիութենական միավորումը: Աշխատանքի ազգային կոնֆեդերացիայի 25 տարվա գոյության ընթացքում, նրանում անընդհատ պայքար է մղվել բակունինյան անարխիստների և անարխո – սինդիկալիստների միջև՝ ազդեցության և ղեկավարության համար:

digitised by A.R.A.R.@

Կատալոնիայի կոմկուսի և սոցիալիստական կուսակցության ազդեցությունը մինչև հանրապետությունը հաստատվելը թույլ էր: 1931 թվականի ապրիլին, մունիցիպալ ընտրություններից հետո, վորոնք բացարձակ հաղթանակ բերին հանրապետականներին, Եսկերրան (դեռ Մադրիդում միապետությունը տապալվելուց առաջ) գրավեց իշխանությունը Կատալոնիայում և հանրապետություն հայտարարեց: 1932 թվականի վերջերին Մադրիդի կորտեսները (պարլամենտը) հաստատեց այսպես կոչված կատալոնյան ստատուտը (կանոնադրությունը), վորը Կատալոնիան հայտարարում էր ավտոնոմ մարզ՝ սեփական պարլամենտ և իր կառավարությունն ունենալու իրավունքով: Վերջիններիս իրավասությունը տարածվում էր լուսավորության, առողջապահության, արդարադատության և այլ հարցերում: Ֆինանսները, մաքսերի գործը, տրանսպորտը, բանակը մնում էին կենտրոնական կառավարության ձեռքին:

1934 թվականի հոկտեմբերյան մարտերից հետո, վորին մասնակցում էին Կատալոնիայի ժողովրդական մասսաները, Լերուսի ռեակցիոն կառավարությունը չեղյալ հայ-



տարարեց Կատալոնիայի ավտոնոմիան: Կոմպանիսը և Կատալոնիայի մի շարք այլ գործիչներ ձերբակալվեցին:

Հակաֆաշիստական այն հզոր շարժումը, վորը համակեց ամբողջ Իսպանիան 1935 թվականի վերջերին, չէր կարող չտարածվել նաև Կատալոնիայում: Եսկերրան միացավ Ժողովրդական ճակատին և, 1936 թվականի փետրվարին իր տարած ընտրական հաղթանակից հետո, հայտարարման կարգով վերականգնեց Կատալոնիայի ավտոնոմիան: Կատալոնիայի կառավարության գլուխը նորից անցավ Կոմպանիսը:

Ժողովրդական ճակատը հաղթանակելուց հետո, զգալիորեն ամրապնդվեցին նաև նրա նախաձեռնողները՝ Կատալոնիայի կոմունիստական և սոցիալիստական կուսակցությունները: 1936 թվականի ամառը յերկու կուսակցություններն էլ, բանվորական յերկու խմբավորումների հետ միասին, կազմեցին Կատալոնիայի միացյալ սոցիալիստական կուսակցությունը: Այդ կուսակցությունն արագորեն աճում է և ներկայումս ունի ավելի քան 50 հազար անդամ: Միաժամանակ աճում է նաև ընդհա-



digitised by A.R.A.R.@

նուր բանվորական միության հարող միացյալ պրոֆմիությունների (նախկին ռեֆորմիստական և ունիտարական պրոֆմիությունների) ազդեցությունը:

1936 թվականի հուլիսին բռնկած գեներալական — ֆաշիստական խռովությունը Կատալոնիայում ճնշվեց յերկու օրում: Խռովությունը հզոր խթան հանդիսացավ բոլոր պրոլետարական, բոլոր դեմոկրատիկ ուժերի համախմբման համար: Անարխիստները և անարխո—սինդիկալիստներն աջակցություն խոստացան կառավարությանը:

Հայտարարություն յեղավ այն մասին, վոր բռնագրավվում են այն բոլոր անձանց կալվածներն ու ձեռնարկությունները, վորոնք մասնակցել են խռովությանը կամ փախել են խռովարարների մոտ: Գյուղացիներն ազատվեցին հողի ճորտային վարձակալությունից, մտցվեց բանվորների շահերին համապատասխանող սոցիալական օրենսդրություն և այլն:

Սակայն կառավարության բոլոր ձեռնարկումներում, մանավանդ բանակ ստեղծելու գործում յերկար ժամանակ անհրաժեշտ կենտրոնացում չկար: Իրենց սկզբունքներին հավատարիմ անարխիստները



հանդես եյին գալիս միասնական կենտրոնացված հրամանատարության, կանոնավոր բանակ ստեղծելու դեմ, պետական ու զինվորական կարգապահության դեմ:

Մինչդեռ այդ ժամանակներում ռազմաճակատներում դրությունը բարդանում եր: Թշնամին մոտենում եր Մադրիդին: Վտանգըն ուժեղացավ նաև Կատալոնիայի համար: Իրերի ընթացքն ազդեցություն գործեց անարխիստների և անարխո—սինդիկալիստների վրա: Անարխո—սինդիկալիստները սեպտեմբերի վերջերին մտան Կատալոնիայի կառավարության կազմի մեջ, վորի մեջ մտան նաև Կատալոնիայի միացյալ սոցիալիստական կուսակցության և բարասեյրների (մանր հողավարձակալների) միության ներկայացուցիչները: Անարխիստների զգալի մասը հասկացավ կենտրոնացած պայքարի և խստագույն կարգապահության հաստատելու անհրաժեշտությունը: Հոկտեմբերի վերջերին միասնական ճակատ կազմվեց Իբերիայի անարխիստների ֆեդերացիայի, աշխատանքի ազգային կոնֆեդերացիայի, Կատալոնիայի միացյալ սոցիալիստական կուսակցության և Կատալոնիայի միացյալ ընդհանուր բանվորական միության միջև:



digitised by A.R.A.R.@

Քանի ավելի յեր զարգանում քաղաքացիական պատերազմը, այնքան ավելի մեծ նշանակություն եր ստանում Կատալոնիայի մարդկային և նյութական ռեսուրսների մոբիլիզացիան: Կատալոնիան գնալով ավելի խոշոր դեր է խաղում հանրապետական բանակին ռազմամթերք, ինքնաթիռներ, տանկեր, զրահապատներ, գնդացիրներ, հրացաններ, արկեր և այլն մատակարարելու գործում:

Խռովարարները և ինտերվենտները մեծ նշանակություն են տալիս Կատալոնյան թիկունքի կազմալուծմանը: Այդ խնդիրը հանձնարարված եր նրանց հլու-հնազանդ գործակալ Իսպանական տրոցկիստներին:

Տրոցկիստական խմբակները 1936 թվականին կազմեցին այսպես կոչված ՊՈՈՒՄ (մարքսիստական միավորման բանվորական կուսակցություն): Իսպանական տրոցկիստները, փորձելով վիժեցնել պրոլետարիատի միասնությունը, հանդես են գալիս ժողովրդական ճակատի դեմ, հանրապետության դեմ, կառավարության դեմ:

Տրոցկիստների բարսելոնյան պուտչը լիակատար կերպով մերկացրեց նրանց նույնիսկ դեռ մինչև վերջին ժամանակներս մի-



ամտորեն մոլորության մեջ ընկած անարխիստ բանվորների առաջ, ապացուցելով նրանց, վոր տրոցկիստները Ֆրանկոյի, Հիտլերի և Մուսոլինիի գործակալներն են և տրոցկիստների դեմ պայքարելը բոլոր ազնիվ դեմոկրատների ու հակաֆաշիստների գործն է:

Տրոցկիստների դավաճան յելույթը միահամուռ ցասում առաջացրեց Իսպանիայի ժողովրդական մասսաների մեջ: Ընդհանուր բանվորական միությունը և աշխատանքի ազգային կոնֆեդերացիան նշավակեցին ֆաշիստական – տրոցկիստական պուտչը: Ընդհանուր բանվորական միությունը վորոշեց վտարել իր միացրած պրոֆմիություններից հակահեղափոխական տրոցկիստական բանդայի՝ ՊՈՈՒՄ-ի անդամներին: Իսպանիայի բազմաթիվ քաղաքական և պրոֆմիութենական կազմակերպությունները միահամուռ կերպով պահանջում են անհապաղ ցրել և արգելել ՊՈՈՒՄ-ը:



digitised by A.R.A.R.@

## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

### ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ԱՌԱՆՁԻՆ ԲԱՌԵՐԻ ՅԵՎ ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆ

Ազդեցության վոլորտներ. — Վոլորտ լայն իմաստով նշանակում է մարզ, հարցերի շրջան, միջավայր:

Ազդեցության վոլորտ — հետամնաց և թույլ պետությունները քաղաքականապես ու տնտեսապես իմպերիալիստական գիշատիչներին յենթարկելու ձևերից մեկը, յերբ վորևէ յերկրում մրցող յերկու կամ մի քանի պետություններ իրար հետ համաձայնություն են կնքում այդ յերկիրն ազդեցության շրջանների բաժանելու շուրջը: Յերբեմն այդպիսի բաժանում կատարվում է առանց պաշտոնական համաձայնագրի: Ազդեցության վոլորտների բաժանելու նպատակն է՝ կանխել նոր մրցակիցների թափանցումը տվյալ յերկիրը, արգելք հան-

2-

դիսանալ այդ յերկրի սեփական տնտեսության զարգացմանը և վոչնչացնել նրա տնտեսական ու քաղաքական ինքնուրույնությունը:

Ազդեցության վոլորտների համար մղվող պայքարը նպաստում է հակասությունների ե՛լ ավելի սրմանը իմպերիալիստական յերկրների միջև: Այդպես, մի ժամանակ ճապոնացիք Չինաստանի հյուսիսային նահանգները դիտում եյին վորպես իրենց ազդեցության վոլորտը: Իսկ Յանցզի գետի ավազանը և հարավային Չինաստանը (Ֆուցզյան, Գուանսի, Գուանդուն), վորտեղ ներդրված են առավելապես անգլիական կապիտալներ, հանդիսանում են անգլիական ազդեցության վոլորտը: Վերջին տարիներս ճապոնական իմպերիալիստները հայտարարում են, թե «իրավունք» ունեն անբաժան իշխելու ամբողջ Չինաստանում, հնարելով դրա համար մի լոզունգ՝ «Ասիան ասիացիների համար»: Հարավային ուղղությամբ առաջ գնալու այն ձգտումը, վոր ցուցաբերում է Ճապոնիան, սպառնում է Անգլիայի շահերին և մեծ չափով սրում է այդ իմպերիալիստական պետությունների միջև յեղած հակասությունները:



digitised by A.R.A.R.@

Լապիդար վորոշում. — *Շատ հակիրճ, սեղմ լեզվով գրված վորոշում: Հին ժամանակները այդպիսի լեզվով եյին գըրվում գերեզմանաքարերի վրա փորագրվող մակագրությունները («լյապիս», լատիներեն նշանակում է քար): Նույն իմաստով է գործ ածվում նաև լապիդար վոճ, լապիդար Փրազ արտահայտությունները: «Լապիդար» բառի հետ միասին, արտահայտության և վոճի հակիրճությունը մատնանըշելու համար գործ է ածվում լակոնիկ բառը, վերջինս ծագում է հին հունական Լակոնիա պետության անունից, վորի բնակիչներն, ըստ ավանդության, հայտնի եյին խոսքի հակիրճությամբ և սեղմությամբ:*

Լատիֆունդիա. — *Մասնավոր խոշոր հողատիրություն: Հին ժամանակները լատիֆունդիա եյին կոչվում հռոմեյական կալվածատերերի ընդարձակ հողերը: Լատիֆունդիաներ կան կապիտալիստական բոլոր յերկրներում, վոչ միայն ագրարային, այլև բարձր արդյունաբերություն ունեցող յերկրներում, իսկ ամենից ավելի տարածված են Անգլիայում, Գերմանիայում, Իտալիայում (մանավանդ հարավում և Սի-*



*ցիլիա կղզում), Ռումինիայում, Հարավային Ամերիկայի յերկրներում, Լեհաստանում, Հունգարիայում և այլն:*

*Անգլիայում հողի սեփականատերերի ընդհանուր թվի 0,4 տոկոսն ունի ամբողջ հողի 53,5 տոկոսը, իսկ մանր հողային սեփականատերերի 84,5 տոկոսն ունի հողի մոտ 2 տոկոսը: Մոտավորապես նույն պատկերն ենք տեսնում բոլոր կապիտալիստական յերկրներում:*

*Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ Հեղափոխությունը վերացրեց կալվածային հողատիրությունը և լատիֆունդիաները Ռուսաստանում: Գյուղացիությունը ստացավ հող, վորի մասին յերազում եր դարերով: Ստալինյան Սահմանադրությունն իր 8–րդ հոդվածով կոլտնտեսություններին ամրացնում է նրանց զբաղեցրած հողը՝ «անվճար և անժամկետ, այսինքն առհավետ ոգտագործելու համար»:*

Կաբինետի ճգնաժամը. — *Կաբինետ կամ ավելի ճիշտ մինիստրների կաբինետ է կոչվում ավելի սահմանափակ կոլեգիա մինիստրների խորհրդի մեջ, այսինքն գործադիր իշխանության այն վերագույն որգանում, վորը պարլամենտական բուրժուա-*



digitised by A.R.A.R.@

կան յերկրներում այլ կերպ կոչվում է կառավարություն: Հաճախ «կաբինետ» բառը գործ է ածվում նույն իմաստով, վորով գործ է ածվում կառավարություն բառը (մինիստրների խորհուրդ): Կաբինետի ճգնաժամ կամ այլ խոսքով կառավարության ճգնաժամ — նշանակում է ճգնաժամ, կրիտիկական մոմենտ, վորն առաջ է գալիս կամ հենց կաբինետի կազմում (առանձին մինիստրների միջև) ծագած կոնֆլիկտից կամ կաբինետի և պարլամենտի միջև ստեղծված կոնֆլիկտից: Սովորաբար այդպիսի կոնֆլիկտները (մանավանդ կաբինետի և պարլամենտի միջև ծագածները) հարկադրում են կաբինետին հրաժարական տալ: Դրանից հետո պետության ղեկավարը (միապետը, նախագահը) նշանակում է նոր վարչապետ (մինիստրների խորհրդի նախագահ) և հանձնարարում է նրան կաբինետ ստեղծել նոր կազմով: Այն ժամանակաշրջանը, վորն ընկնում է մի կաբինետը հրաժարվելու և մյուսը կազմվելու միջև՝ նոր կաբինետի ձևավորման և նրա կազմին վերաբերյալ բանակցությունների շրջանը, կոչվում է կաբինետի ճգնաժամի կամ կառավարական ճգնաժամի շրջան:



Ռեստավրացիա (վերականգնում). — Լատիներեն «ռեստավրարե» վերականգնել բառից: Գործ է ածվում յերկու նշանակությամբ.

1. Ռեստավրացիա նշանակում է ժամանակի ընթացքում կործանված շենքերի, արվեստի ստեղծագործությունների (նկարների, քանդակների, աչքի ընկնող ճարտարապետական հիշատակարանների և այլն) վերականգնումը նրանց նախկին տեսքով: Այդպիսի ռեստավրացիայով զբաղվող արվեստագետներն ու վարպետները կոչվում են ռեստավրատորներ: Կարելի յե ռեստավրել (վերականգնել) նաև դազգյահներ, մեքենաներ և այլն:

2. Քաղաքական նշանակությամբ ռեստավրացիա նշանակում է տապալված միապետի կամ արքայական տոհմի նորից գահ բարձրանալը, հեղափոխությամբ վոչնչացված հասարակակարգի վերականգնումը, այսինքն՝ հակահեղափոխություն:

Այդպիսի ռեստավրատորներ են հանդիսանում արտահանելի տրոցկիստները և աջ հակահեղափոխականները մեր յերկրում կապիտալիզմը վերականգնելու իրենց ծրագրով: Կապիտալիստական ռեստավրացիա-

digitised by A.R.A.R.@

յի այդ ծրագիրը նշանակում է վերադարձ դեպի կապիտալիզմը, բանվորների և գյուղացիների բոլոր նվաճումների վերացումը, մեր յերկրում արդեն հիմնականում իրականացված սոցիալիզմի վերացումը:

Տրոցկիստները յերազում են կապիտալիստական ստրկության վերադարձնել բանվորներին, հանձնելով կապիտալիստներին մեր հպարտության առարկան՝ սոցիալիստական գործարանները, հանքահորերն ու ֆաբրիկները, վոչնչացնել խորհտնտեսությունները, ցրել կոլտնտեսությունները, խլել հողը կոլտնտեսականներից և նորից դնել նրանց կալվածատիրական ու կուլակային ճորտության լծի տակ:

Խորհրդային դատարանն անողոքաբար պատժեց տրոցկիստների հակախորհրդային բանդան՝ ժողովրդի ամենավոխերիմ թշնամիների այդ բանդան: Խորհրդային բազմամիլիոն ժողովուրդը միահամուռ հավանություն տվեց դատարանի վճռին: Խորհրդային ժողովուրդն այսուհետև ևս անողոքաբար կվոչնչացնի տրոցկիստական-ֆաշիստական սողուններին, Գեստապոյի և ճապոնական հետախուզության գործակալներին:



**Սենյորեն-կոնվենտ**. — Ավագագույնների խորհուրդ: «Սենյոր» բառը լատիներեն նշանակում է ավագ, «կոնվենտ» (լատիներեն «կոնվենտուս») նշանակում է ժողով, խորհրդակցություն, համագումար: Բուրժուական դեմոկրատական յերկրների պարլամենտներում՝ սենյորեն-կոնվենտը՝ ավագագույնների խորհուրդը, վորը բաղկացած է պարլամենտի մեջ մտնող կուսակցությունների պարագլուխներից, սահմանում է նիստերի ժամանակը, հարցերը քննելու կարգը, դանազան հանձնաժողովների կազմը, քննարկում է ծագող միջադեպերը և այլն:

ԽՍՀՄ-ում սենյորեն-կոնվենտ կազմվում եր համագումարներում և կոնֆերանսներում մասնակցող պատգամավորությունների ներկայացուցիչներից: Սենյորեն-կոնվենտը խորհրդակցական որգան եր համագումարի կամ կոնֆերանսի նախագահության կից: Սակայն, ի խախտումն ներկուսակցական դեմոկրատիայի հիմունքների, այդ խորհրդակցական-կարգադրիչ որգանը մի շարք դեպքերում վերածվում եր վճռական որգանի, վորը հաճախ փոխարինում եր համագումարը կամ կոնֆերանս-



digitised by A.R.A.R.@

րը: Այդ յերևույթն առանձնապես տեղի յեր ունենում ընտրությունների ժամանակ այն դեպքում, յերբ թեկնածուների ցուցակները քննարկվում եյին միմիայն սենյորեն-կոնվենտում և ապա ընդունված թեկնածուները քվեարկվում եյին վոչ թե անհատապես, այլ ցուցակով, այն ել հաճախ առանց վիճաբանություններ բանալու այդ թեկնածուների շուրջը:

Համ. Կ(բ)Կ Կենտկոմի Պլենումի ընկ. Ժդանովի զեկուցման առթիվ ընդունած այն վորոշումը, վորը վերաբերում է կուսակցական կազմակերպությունների նախապատրաստմանը ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի նոր ընտրական սիստեմով ընտրություններին և կուսակցական քաղաքական աշխատանքի համապատասխան վերակառուցմանը (1937 թվականի փետրվարի 27-ը), վերջ է տալիս ներկուսակցական դեմոկրատիայի այդպիսի խախտմանը:

Տոտալ (կամ տոտալիտար). — Ֆրանսերեն «տոտալ» բառից, վոր նշանակում է լիակատար, ամբողջապես, գումար: Մի բառ, վոր վերջին տարիներս ֆաշիստ գրողների շնորհիվ տարածվել է մեծ չափով: Ամենից հաճախ այդ բառը նրանց կողմից



գործ է ածվում յերկու կապակցությամբ՝

1. Տոտալ պատերազմ — Ֆաշիստական ռազմական թեորետիկների մոտ նշանակում է այնպիսի պատերազմ, վորը ընդհանուր մոբիլիզացիայի կարգով ոգտագործում են յերկրի մարդկային, նյութական և բարոյական բոլոր ռեսուրսները:

2. Տոտալ պետություն — Ֆաշիստական տերմինոլոգիայով նշանակում է համապարփակ, ամեն ինչ ընդգրկող պետություն:

Ֆաշիստական տոտալ պետությունը կոչված է փոխարինելու դեմոկրատիան կառավարական այնպիսի սիստեմով, վորը պետք է «կարգ հաստատի», ցույց տա կապիտալիստներին ու բանվորներին «նրանց տեղը», դադարեցնի «վնասակար ու անիմաստ դասակարգային պայքարը», «վերացնի արտադրության անարխիան»: Այդ կեղծավոր դեմագոգիկ ֆրազները սքողվում են ամենաստոր կերպով աշխատավորներին խաբելով: Տոտալ պետության քողի տակ թաքնված է ֆինանսական կապիտալի դիկտատուրան, վորը կողոպտում է նախ և առաջ պրոլետարիատին, ինչպես և գյուղացիությանը և մանր ու նույնիսկ միջակ



digitised by A.R.A.R.@

բուրժուազիային, նրա հետև թաքնված և տալու պատերազմի նախապատրաստումը։

Փրկանվել ագրեսորից. — *«Փրկանվելու քաղաքականությունը» վարվում էր հին և միջին դարերում, յերբ առանձին քաղաքներ ու մարդեր տուրքով փրկանվում եյին ոտարերկրյա աշխարհակալների ներխուժումից։*

*Ներկայումս «փրկանվելու քաղաքականությունը» նորից կյանք է առել։ Որինակ՝ անգլիական մի քանի շրջաններ պատրաստ են փրկանվելու ֆաշիստական ագրեսոր Գերմանիայից ինչ գնով էլ լինի, բայց... ուրիշի հաշվին։ Յերբ Գերմանիան առաջադրում էր գաղութները վերադարձնելու պահանջը, անգլիական այդ շրջաններն առաջարկում են վերադարձնել Գերմանիային նրա նախկին աֆրիկյան գաղութները՝ Տոգոն և Կամերունը, վորոնց մեծ մասն անցել է... Ֆրանսիային։*

*Գերմանական վտանգից փրկանվելու պատրաստականությունը, վոր ցուցաբերում են մի քանի անգլիական շրջաններ, շատ հեռու յե գնում։ Նրանք պատրաստ են իրենց սեփական շահերին զոհաբերել փոքր յերկրների շահերը և Գերմանիայի ճանկը*



*քցել պատառոտելու Չեխոսլովակիան, Լեհաստանը, Ավստրիան, Ռումինիան, Հարավսլավիան, մերձբալթյան յերկրները և մի շարք այլ յերկրներ։*

*Այդ տեսակ «քաղաքագետները» չեն հասկանում, վոր նույնիսկ այդպիսի առատաձեռն պատառներով չի կարելի հագեցնել ֆաշիստ ագրեսորների ախորժակը, վորոնք բացեիբաց դնում են ամբողջ աշխարհը վերաբաժանելու հարցը։ Հիշյալ քաղաքագետները չեն հասկանում, վոր այդ զիջումները կզինեյին ագրեսորին պատերազմի նոր միջոցներով՝ աշխարհը նորից վերաբաժանելու համար։ Ագրեսորից փրկանվելու փորձերը միայն խրախուսում են նրա ակտիվությունը՝ պատերազմը նախապատրաստելու գործում։*





digitised by A.R.A.R.@

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն — «Խորհրդ. Հայաստան»

Շարունակվում է 1937 թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . . 3 »
3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝

„Սոյուզպեչատ"-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին։

digitised by A.R.A.R.@